




1939 թվականին Լենինի մորաքրոջ որդու՝ Ն. Վերետեննիկովի գրքում ես գտա հետևյալ տողերը. «...Մաշա մորաքույրը փոքրիկ Վոլոդիայի օրորոցի մոտ երգում էր մի երգ, որի խոսքերը մեզ բոլորիս դուր էին գալիս: Ես հիշում եմ, թե ինչպես Կոկուշկինոյում մենք արտասանում ու երգում էինք այդ բանաստեղծությունը: Սրանից մի քանի տարի առաջ Աննա Իլյինիչնայի հետ ընդհանուր ջանքերով վերականգնեցինք այդ երգի լրիվ տեքստը»: Այնուհետև բերված էին օրորոցային երգի խոսքերը, որոնք ինձ ապշեցրին նրանով, որ կանխագուշակում էին Լենինի ապագան: Ինչո՞վ բացատրել այս զուգադիպությունը: 1941 թվականին ես տեսա Աննա Իլյինիչնա Ուլյանովայի իսկական ձեռագիրը՝ օրորոցային երգի լրիվ տեքստով: Ես միշտ երազում էի այդ օրորոցայինի մասին պատմել դպրոցականներին և ահա գրեցի այս կինոսցենարը: Կինոսիրող Պ. Աղաբաբյանը իմ այս սցենարով ֆիլմ նկարահանեց, որը համամիութենական 3-րդ կարգի դիպլոմի արժանացավ: Ֆիլմում նկարահանվեցին Երևանի 77-րդ դպրոցի աշակերտներն ու աշակերտուհիները:

Լ. ՄՈՒՋԱՆ

# ՆՐԱ ՕՐՈՐՈՑԱՅԻՆԸ

(Գրական կինոսցենար)

*Կոմունալ բնակարանի նախասենյակ: Փակ դռան մոտ, որի ետևից լսվում է գրամեքենայի չխչխկոցը, կանգնած է տասներեք տարեկան մի դպրոցական աղջիկ՝ Նատաշա անունով:*

*— Մենք նոր հարևան ունենք,— խորհրդավոր ձայնով հայտնում է նա:— Ամբողջ երեկոներն աշխատում է: Մի անգամ ես ցանկացա տեսնել, թե նա ինչով է զբաղված, բայց չգիտեի ինձ թույլ կտա՞ր ներս մտնել, թե՞ ոչ...*

*Աղջիկը կիսաբաց է անում դուռը:*

*Հարևանի սենյակը: Գրքերով ծանրաբեռնված սեղանի մոտ նստած է մի տարեց մարդ և ինչ-որ բան է մեքենագրում: Նա դռան ճռռոցի վրա ետ է շրջվում և ասում.*

*— Համեցեք, ներս մտեք:*

*Նատաշան տատանվում է՝ ներս մտնե՞լ, թե՞ ոչ:*

*Նատաշան մտնում է հարևանի սենյակը և մոտենում է սեղանին: Հարևանը շարունակում է մեքենագրել:*

*Նատաշան սկսում է դիտել սեղանին դրված գրքերը: Դրանք բոլորն էլ Լենինի պատանեկության մասին պատմող գրքեր են:*

*Աղջիկը մի հայացք է ձգում շուրջը և տեսնում է ինժեներական գծագրերով մի տախտակ:*

*ՆԱՏԱՇԱ.—(Ցույց տալով տախտակը) Լենինի մասին գրքեր և հանկարծ գծագրական տախտակ: Դա ինչի՞ համար է:*

*ՀԱՐԵՎԱՆ.— (Կտրվելով աշխատանքից) Ես էլեկտրիկ եմ:*

*ՆԱՏԱՇԱ. — Իսկ Լենինի մասին պատմող գրքե՞րը:*

*ՀԱՐԵՎԱՆ.— Ազատ ժամերիս ես ուսումնասիրում եմ Լենինի պատանեկությունը:*

*Հարևանը թեքվում է գրամեքենայի վրա և շարունակում է աշխատել:*

*Նատաշան ուշադիր սենյակն է դիտում. Լենինի կիսանդրին...գծագրական տախտակը...*

*Աղջիկը շուռումուռ է տալիս սեղանին դրված գրքերը: Գրքերից մեկի միջից հանում է ինչ-որ մի էջի լուսանկարչական պատճենը: Կարդում է.*

*«...Փոքրիկ Վոլոդյայի օրորոցի մոտ Մարիա Ալեքսանդրովնան երգում էր.*

*Իսկ բախտը քեզ լույս աշխարհում*
*Կպարգևի բաժին ինչ-որ,*
*Որ դու բերես մի նոր գարուն*
*Մեծ գործերով քո փառավոր:*
*Ով առաջնորդ, և դու սակայն*
*Դժբախտության անեղ պահին*
*Պիտի դառնաս մի մեծ պաշտպան*
*Քո մեծ երկրին ու աշխարհին»:*



ՆԱՏԱՇԱ.—(Զարմացած) Ինչպիսի՞ զուգադիպություն։

ՀԱՐԵՎԱՆ.—(Կտրվելով աշխատանքից և հայացք նետելով ֆոտոպատճենի վրա)։

Օրորոցայի՞նը։ Այդ զուգադիպության լուծումը չափազանց պարզ է, աշխատիր գտնել այն։

Աղջիկը շարունակում է կարդալ.

Կամ թե բախտի կամքով արդար
Տրվելու է քեզ բարձր խելք,
Որ դու հայտնես մտքեր հազար,
Որ դու գտնես հազար մի ելք։
Ճշմարտության ուժով անհաղթ
Դու կկանգնես չարին ընդդեմ,
Անկաշառ ես և անարատ,
Մութ ամպերը պիտի ցնդեն։

ՆԱՏԱՇԱ.—(Ֆոտոպատճենը ձեռքին՝ հարևանից հեռանալով) Ա՞յ քեզ խնդիր...

ՆԱՏԱՇԱՅԻ ԴԵՄՔԸ.—(Խոշոր պլանով) Ես չեմ դադարել «Օրորոցայինի» լուծման վրա մտածելուց...

Դասարան։ Դասի ժամ է։

Նատաշան իր ընկերուհի Օլյային ցույց է տալիս «Օրորոցայինի» լուսանկարչական պատճենը։

Օլյան կարդում է և ասում.

—Չի կարող պատահել։ Լենինի մայրը ինչպե՞ս կարող էր նախօրոք իմանալ, որ նա առաջնորդ է դառնալու։

Աղջիկների վեճը գրավում է առջևում նստած տղայի ուշադրությունը։ Նա ետ է նայում։

Դասամիջոց է։

Տղան Նատաշայի ձեռքից խլում է ֆոտոպատճենը, կարդում է այն և քմծիծաղով ասում.

— Հեռու են սա հորինել։

Ֆոտոպատճենը մի այլ դպրոցականի ձեռքում է։

— Միստիկա։ Ֆանտաստիկա,— ծաղրանքով նկատում է նա։

Նատաշան խլում է տղայից ֆոտոպատճենը և ընկերուհու հետ վազում դպրոցի գրադարան, որպեսզի իմանա, թե որտեղից է այդ էջը։

Աղջիկները վազում են դպրոցի միջանցքով։

Տղաները շտապում են նրանց ետևից։

Դպրոցի գրադարանը։

Գրադարանավարուհին դիտում է ֆոտոպատճենը։

Դարակներից գրքեր է վերցնում։ Բաժանում է երեխաներին։

Աղջիկները պայմանավորվում են հանդիպել հաջորդ օրը։

ՓՈՂՈՑ

Նատաշան և Օլյան հեռախոսի խցիկի մոտ են։

«Օրորոցայինի» լուծումը նրանք այդպես էլ չեն գտել։



Գնում են որոնումները շարունակելու շրջանային գրադարանում:

Ավա՜ղ: Շրջանային գրադարանը փակ է:

Ի՞նչ անել: Աղջիկները որոշում են գնալ Նատաշայի հարևանի մոտ:

— Ճիշտ է, նա գործուղման մեջ է, — ասում է Նատաշան, բայց ինձ թույլ է տալիս մտնել իր սենյակը, որպեսզի գրքեր կարդամ Լենինի պատանեկության մասին:

Աղջիկները քայլում են փողոցով:

Ուղևորվում են դեպի այն տունը, որտեղ Նատաշան է ապրում:

Բարձրանում են աստիճաններով:

Դուռը թակում են:

Այն բաց է անում Նատաշայի փոքրիկ քույրիկը:

Աղջիկները մտնում են հարևանի սենյակը:

Քույրիկը զարմացած հայացքով ուղեկցում է նրանց:

Աղջիկները հարևանի սենյակում են:

Նրանք շուռումուռ են տալիս նրա գրքերը, թղթապանակները, գրառումները... Սեղանի ծածկոց ապակու տակ նկատում են Ուլյանովսկի Լենինի տուն-թանգարանի պլանը: Նրա տակ գրված է. «Կազմակերպչի տաղանդը, որն այնքան հատուկ է Լենինին, նա զգալի չափով ժառանգել է մորից»: Կրուպսկայա:

Եվ հետո. «Պետք է աշխատել նշմարել Մարիա Ալեքսանդրովնայի կազմակերպչական ընդունակությունները նրա տան կահավորանքի մեջ»:

Աղջիկները միմյանց են նայում:

— Կրկին խնդիր, — ասում են նրանք, — բայց չէ՞ որ առաջին խնդիրը մենք դեռ չենք լուծել:

Որոնումները շարունակվում են:

Աղջիկները գտնում են մի թղթապանակ՝ պատանի Լենինի լուսանկարներով:

Լուսանկարների թղթապանակից հետո աշակերտուհիներից մեկը դուրս է քաշում «Օրորոցայինն» մակագրությամբ թղթապանակը: Աղջիկները հրճվում են: Թղթապանակում դրված է մի ծրար՝ Ուլյանովսկի Վ. Ի. Լենինի տուն-թանգարանի կնիքով: Նրա մեջ մի շատ երկար ոտանավոր կա և մի նամակ:

«Հարգելի ընկեր....

Մարիա Ալեքսանդրովնան իսկապես որ փոքրիկ Լենինի համար երգել է «Օրորոցայինը», որի խոսքերը ձեզ այնքան զարմացրել են: Ուղարկում ենք ձեզ այդ «Օրորոցայինի» լրիվ տեքստը՝ տպագրված մանկական այն հանդեսում, որին մշտապես բաժանորդագրվում էին Ուլյանովները.

Օրոր ասեմ ես քեզ համար,
Ննջիր, ննջիր, մանկիկ սիրուն,
Դեռ շատ հնում կար լավ մի մայր,
Մի թագուհի կար աշխարհում:

Երգում էր նա, հսկում որդուն,
Եվ մի օր էլ որդին բարի
Մի թագավոր դարձավ արթուն,
Տիրեց մի կեսն այս աշխարհի:

Իսկ բախտը քեզ լույս աշխարհում
Կպարգևի բաժին ինչ-որ,
Որ դու բերես մի նոր գարուն
Մեծ գործերով քո փառավոր:

Ով առաջնորդ, և դու սակայն
Դժբախտության անեղ պահին
Պիտի դառնաս մի մեծ պաշտպան
Քո մեծ երկրին ու աշխարհին:

Կամ թե բախտի կամքով արդար
Տրվելու է քեզ բարձր խելք,
Որ դու հայտնես մտքեր հազար,
Որ դու գտնես հազար մի ելք:

Ճշմարտության ուժով անհաղթ
Դու կկանգնես չարին ընդդեմ՝
Անկաշառ ես և անարատ,
Մութ ամպերը պիտի ցնդեն:

Թարգմ. Վ. ՀՈՎՍԵՓՅԱՆԻ





# ԻՆՉ ԿԴԱՌՆԱՄ

ԷԴՎԱՐԴ ԱՎԱԳՅԱՆ

Երբ մեծանամ, ես անպատճառ  
Պիտի դառնամ տոմսավաճառ։  
Էլ առաջվա պստիկը չեմ,  
Տրամվայո՛վ ես կշրջեմ,  
Նախ կգնամ ես Արաբկիր,  
Մի մե՜ծ շրջան, մի նո՜ր երկիր,  
Եվ Շահումյան, ապա մի քիչ՝  
Կտեսնեմ ես հսկա մի լիճ,  
Լճից հետո՝ չաք-չո՜ւկ, չաք-չո՜ւկ,  
Ես կհասնեմ մինչ Կաուչուկ։  
Մի նոր կամուրջ, գիծը վրան,  
Կհասցնի ինձ կայարան,  
Կայարանից զը՜նգ-զնգոցով  
Կսլանամ լայն փողոցով  
Ու կծռվեմ դեպի Զեյթուն  
Եվ կհասնեմ ուղիղ մեր տուն։



Նկ. ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

# ՁԵՐ ՊԱԼԱՏԸ ԵՐԵԽԱՆԵՐ

Սիրելի երեխաներ, բոլորիդ ծանոթ է Մոսկովյան փողոցում գտնվող այս գեղեցիկ շենքը։ Սա ձեր պալատն է։ Ճիշտ է, շուրջը բարձրացած մյուս շենքերի կողքին նա այսօր առանձնապես աչքի չի ընկնում, սակայն 1936 թվականին, երբ կառուցվեց հողաշեն, միահարկ, խղճուկ տների կողքին, հիացնում էր իր շքեղությամբ։

Հայաստանի նորաստեղծ սովետական կառավարության առաջին խնդիրներից մեկը եղավ աճող սերնդի դաստիարակության գործը։ 1922 թվականին այժմյան Ամիրյան փողոցի վրա գտնվող Մաքսիմ Գորկու անվան դպրոցում Երևանի պիոներներին հատկացվեց մի սենյակ։ Այդպես դրվեց այսօրվա պիոներ-պալատի հիմքը։ Այնուհետև Երևանի պիոներներին հատկացվեց այժմյան կենտրոնական ունիվերմագի դիմացի միահարկ տան սենյակներից երեքը, և այնտ՝ նախկին Լենինի հրապարակում գտնվող երկհարկանի մի տուն։ Այս տունը, հրապարակի ընդարձակման կապակցությամբ քանդելուց հետո, պիոներներին տվեցին այժմյան «Աշխատանքային ռեզերվներ» ակումբի շենքը Աբովյան փողոցի վրա, որը այդպես էլ կոչվում էր՝ «Պիոներ-տուն»։ Ահա այս «Պիոներ-տանն» էին հավաքվում Երևանի պիոներները մինչև 1936 թվականը, երբ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի քարտուղար, մանուկների բարեկամ Աղասի Խանջյանի կարգադրությամբ Երևանի պիոներ-դպրոցականներին հանձնվեց այս շենքը, որը դուք այսօր ճանաչում եք որպես ձեր պալատ։ Այս շենքում Երևանի դպրոցական երեխաները ստացան և մեծ թատերասրահ, և մարզասրահ, ցուցասրահ, ընթերցասրահ, և՛ բազմաթիվ այլ սենյակներ։

Այսօր պալատի առաջին սաները մեծացել են, աշխատում են արտադրության, գյուղատնտեսության, գիտության ու արվեստի տարբեր բնագավառներում, իսկ պալատի հյուրընկալ դռներն առաջվա պես բաց են ձեզ համար, սիրելի պիոներ-դպրոցականներ։

Երեկո է։ Եկե՛ք, երեխաներ, այս խաղաղ ժամին մտնենք պալատի դռներից ներս և տեսնենք, թե ինչ է կատարվում այնտեղ։

Դեռ դռների մոտ մեկ իր մեջ է առնում կարմիր փկապավորների հոսանքը։ Ընդարձակ, շքեղ նախասրահում հանդիպում ենք խոշոր, բարի դիմագծերով և արդեն ճերմակող մազերով մի բարձրահասակ մարդու։ Գուրգեն Հովումյանն է, ընկեր Հովումյանը՝ պալա-



տի ամենահնագույն մանկավարժներից մեկը: Մեծ տոնահանդեսներին դուք, անշուշտ, տեսել եք հրապարակով անցնող պիոներների շարասյուներ: Նրանց առջևից կենսուրախ պիոներական



քայլերգ նվագելով գնում է պիոներական նվագախումբը: Ահա այս նվագախմբի ղեկավարն է ընկեր Հովումյանը՝ արդեն քառասուն տարի: «Իմ առաջին սաները հիմա մեծացել են, երաժիշտներ են: Սիրում են արվեստը: Հայրենական պատերազմի ժամանակ նրանցից շատերը գնացին ռազմաճակատ, նվագում էին զինվորական նվագախմբերում»,—պատմում է ընկեր Հովումյանը:

Բացում ենք առաջին իսկ պատահած դուռը. բազմաթիվ երկար սեղանները ծանրաբեռնված են ֆիզիկայի դասերից ձեզ ծանոթ սարքերով ու գործիքներով: Պատանի ֆիզիկոսների խմբակի ղեկավար ընկեր Խանամիր Սահակյանն ահա արդեն տասնվեց տարի շարունակ օգնում է երեխաներին ավելի խորն ուսումնասիրելու իրենց սիրած առարկան՝ ֆիզիկան: Իսկ մյուս սենյակի դուռը դեռ չբացած՝ մենք լսում ենք փոքրիկ երգիչների եռյակի կրնգուն ձայնը: Երևանի շուրջ 100 դպրոցներից երեխաներ են մասնակցում հմուտ երաժիշտ, մանկավարժ Հակոբ Արաբյանի ղեկավարած երաժշտական չորս խմբերում: Դուք, անշուշտ, լսած կլինեք այդ խմբերի ելույթները ձեր դպրոցում, հեռուստատեսությամբ կամ հանդիսավոր տոնակատարությունների ժամանակ: Հիշո՞ւմ եք ինչպիսի վարպետությամբ է նվագում շվիի վրա 17-րդ դպրոցի 2-րդ դասարանի աշակերտ Մնացական Չալիկյանը իր հորինած «Գարնանային»: Եվ «Արևիկ» երգն էլ, որ մենք լսեցինք, հորինել է երաժշտախմբի պատանի ակորդեոնիստ, 56-րդ դպրոցի 4-րդ դասարանի աշակերտ Միշիկ Մկրտչյանը:

Հաջորդ սենյակում երեխաները փորձված մանկավարժ ընկեր Օլյա Օրդոյանի ղեկավարությամբ ուսումնասիրում են հայ ժողովրդի պատմությունը: Մենք ներս ենք մտնում այն պահին, երբ 41-րդ դպրոցի աշակերտ Համլետ Պապիկյանը իր ընկերների համար կարդում է Բագրատունիների դինաստիայի վերաբերյալ իր գիտական զեկուցումը: Հետաքրքիր են անցնում պատանի պատմաբանների պարապմունքները: Նրանք հաճախակի արշավներ են կազմակերպում իրենց ուսումնասիրած պատմական վայրերը: Ահա, հիմա էլ Համլետի զեկուցման կապակցությամբ, երեխաները կայցելեն XI դարի հայ մշակույթի կենտրոնները՝ Սանահին, Տաթև, Գլաձոր...

Իսկ այս սենյակում մեզ ցույց են տալիս 132-րդ դպրոցի 9-րդ դասարանի աշակերտ Կորյուն Ղազարյանի պատրաստած ինքնաթիռի մոդելը, որը մրցումներում սլացավ ժամում 70 կիլոմետր արագությամբ: Իսկ Մաքսիմ Գորկու անվան դպրոցի 9-րդ դասարանի աշակերտ Վարդանյան Աշոտի մեծ նրբությամբ պատրաստած մոդելը կարգացրեց ժամում մինչև 100 կիլոմետր արագություն և գրավեց մրցանակային տեղ:

Հետևյալ սենյակում... Բայց ո՞ր մեկը թվարկենք. 260 խմբակ է գործում այսօր պիոներների պալատում, 260 խմբակներում Երևանի ավելի քան 3500 պիոներ-դպրոցականներ սովորում, հմտանում են գիտության, տեխնիկայի և արվեստների իրենց սիրած բնագավառներում:

Երևանցի պիոները, դպրոցականը պալատ է գալիս ո՛չ միայն այդ խմբակներում կատարելագործվելու: Պալատում այսօր գործում են բազմապիսի ակումբներ, որոնց մեծ հաճույքով մասնակցում են երեխաները: Ահա, «Ինտերնացիոնալ բարեկամություն» ակումբը: Այստեղ, դու, պատանի պիոներ, կարող ես նամակագրական կապեր հաստատել արտասահմանի քո հասակակից բարեկամների, ինչպես նաև քո Հայրենիքի տարբեր մասերում բնակվող բարեկամներիդ հետ: Եթե դու դրուժինայի խորհրդի նախագահ ես, ապա կարող ես դառնալ «Խարույկ» ակումբի անդամ, որտեղ ձեռք կբերես քո դրուժինայում միջոցառումներ կազմակերպելու և անցկացնելու հմտություն: Իսկ ամենափոքրիկ դպրոցականները՝ հոկտեմբերիկները, պալատում կարող են այցելել իրենց ակումբը, որ հենց այդպես էլ կոչվում է՝ «Հոկտեմբերիկ»:



Ուրիշ ակումբներ էլ կան պալատում: Ակումբներից ու խմբակներից բացի այստեղ ձեզ սպասում են գրադարանն ու ընթերցասրահը, խաղասենյակները, ժամանակակից պարերի ուսուցման սենյակը, հանդիպումներ նշանավոր մարդկանց հետ, հետաքրքիր կեկուցումներ ու բանավեճեր, ցուցահանդեսներ, կինոնկարների դիտումներ և շատ ու շատ ուրիշ օգտակար ու հետաքրքիր միջոցառումներ:

Լավ տպավորություններով լեցուն, մենք դուրս ենք գալիս պա-



լատից: Քաղաքը վառել է իր բոլոր լույսերը: Բոլոր լուսամուտներով լուսարձակող պալատի դռների կողմն են գնում կարմիր վզկապավոր երեխաների նորանոր խմբեր: Ինչպես և տարիներ առաջ՝ երեխաների աշխույժ աղմուկով, հոգատար մանկավարժների ջերմությամբ լեցուն այս շենքում, նրանց սպասում է մի նոր, հետաքրքիր, ուսանելի և օգտակար աշխարհ:

ԿԱՄԱՐԻ ՏՈՆՈՅԱՆ

Լուսանկարները՝
Զ. ԲՇՏԻԿՅԱՆԻ

# Արկածը

ՀԱՆՐԻ ՋԱՐՅԱՆ

*Նա սկզբում արագ էր քայլում: Հետո դանդաղեցրեց քայլերն ու հաճախակի նայում էր շուրջը: Նա վանդակավոր վառ կարմիր բլուզ ուներ հագին, և տղայի համար դժվար չէր հեռվից նրան հետևելը: Տղան զգում էր, որ հետևում է նրան, բայց անծանոթ հորաքույրը կարծես ասում էր. «Չէ՞ որ դու կարմիր փողկապ ես կրում»...*

*Եվ կարմիր փողկապ կրող տղան շարունակում էր հետևել նրան, որը կարմիր բլուզ ուներ հագին: Նա մի քանի անգամ կորավ տղայի տեսադաշտից, բայց տղան արագացնում էր քայլերը, և վանդակավոր կարմիր բլուզը նորից երևում էր: Տղան հեռվից էր նրան հետևում, որովհետև, եթե նա նկատեր, որ հետևում են իրեն, երևի կփախչեր... Տղան փոքր էր նրանից. աշակերտական համազգեստ ուներ հագին, վզին կարմիր փողկապ, ձեռքին՝ պայուսակ և ընդամենը 12 տարեկան հազիվ լիներ: Իսկ նա՝ 18—20:*

*Գարեջրավաճառի կրպակի մոտ նա կանգ առավ, գրպանից թղթադրամներ հանեց ու սկսեց գարեջուր խմել: Խմում էր առանց շտապելու, կարծես ոչինչ չէր եղել, բայց երբեմն-երբեմն նայում էր շուրջը...*

*Տղան էլ նայեց շուրջը, հետո՝ փողոցի սյունից կախված ժամացույցին: Ութն անց կես էր, արդեն ուշացել էր դասից:*

*«Ափսո՜ս»,— մտածեց տղան ու նորից նայեց շուրջը, բայց՝ ոչ մի միլիցիոներ...*

*Կարմիր բլուզավորը գավաթը ցած դրեց, մոտեցավ տրոլեյբուսի կանգառին:*

*Տղան մտածում էր.*

*«Ի՞նչ անեմ. գնամ դպրո՞ց, թե՞ այս կողքիս քեռուն ասեմ... Բայց մինչև բացատրեմ, արդեն ուշ կլինի»...*

*Եվ երբ տրոլեյբուսը եկավ ու կանգ առավ, տղան էլ նստեց:*

*Հետո, երբ տրոլեյբուսը շարժվեց, տոմսավաճառն ասաց.*

*— Տոմսեր ստացեք:*

*Կարմիր բլուզավորն էլ տոմս ստացավ: Իսկ տղան փող չուներ և ամոթից կախել էր գլուխը:*

*Տոմսավաճառը դիմեց տղային.*



— Փող չունե՞ս։

— Ոչ,— մրթմրթաց Տղան։

— Հապա ինչու՞ նստեցիր։

Տղան լուռ էր. նա չէ՞ր ասելու, թե ինչու նստեց։

— Հը՞։ Ինչու՞ նստեցիր,— համառում էր տոմսավաճառը։

Բոլորը շուռ էին եկել և սպասում էին, թե ինչ կպատասխանի Տղան։ Բայց հանկարծ նա՝ կարմիր բլուզավորը, ձեռքը տարավ գրպանը, կոպեկանոց հանեց, տվեց տոմսավաճառին.

— Մեկ տոմս էլ այս փոքրիկի համար։

Տոմսավաճառն ասաց.

— Քեզ նմաններն են փոքրերին փչացնում...

Մի ակնոցավոր հորաքույր նույնպես այդ կարծիքին էր։

— Այո,— ասաց նա, ակնոցի տակից խեթ-խեթ նայելով Տղային, հետո՝ իր ժամացույցին, — և փոխանակ դասի գնալու, տրոլեյբուսով թրև է գալիս...

Տղան քիչ էր մնում պայթեր. ախր ինքը թրև չէր գալիս, այլ...

Բայց տրոլեյբուսը կանգ առավ, և նա իջավ։ Տղան էլ իջավ։

Փողոցում նա ձեռքը դրեց Տղայի ուսին ու հարցրեց.

— Բա ի՞նչ ես անում, որ թրև չես գալիս։

Տղան լուռ էր. նա չէ՞ր ասելու՝ հետևում եմ քեզ։

— Ինչու՞ ես դասից ուշացել։

Տղան այս անգամ էլ լուռ էր. նա չէ՞ր ասելու՝ քո պատճառով։

— Պաղպաղակ կուտե՞ս։

— Ոչ,— ասաց Տղան։

— Ինչու՞։

Տղան քիչ էր մնում ասեր, թե ինչու, բայց զսպեց իրեն ու ինքը հարց տվեց.

— Իսկ դու ինչու՞ ես ուզում, որ ես պաղպաղակ ուտեմ։

— Հենց այնպես,— ասաց նա։— Հաջողություն եմ ունեցել և ուզում եմ հյուրասիրել քեզ։

Տղան քմծիծաղ տվեց. որովհետև հաստատ գիտեր, թե նա ինչ հաջողություն է ունեցել, և այլևս չկարողացավ զսպել իրեն.

— Իսկ ի՞նչ հաջողություն ես ունեցել։

Դերերը փոխվեցին։ Այս անգամ նա լռեց։

Մի քանի վայրկյան երկուսն էլ լուռ էին։

— Դե, կուտե՞ս պաղպաղակ,— հանկարծ բարկացավ նա։

Տղան էլ բարկացավ։

— Ոչ։

— Դու գիտես,— ուսերը թափ տվեց նա ու գնաց։

Իսկ Տղան մնաց տեղում կանգնած։ Մտածում էր՝ հիմա՞ ինչպես վարվի. շարունակի նրան հետևե՞լ, թե՞ վազի դպրոց...Եվ վազեց, բայց ոչ թե դպրոց, այլ դարձյալ նրա ետևից։ Հետո ավելի արագ սկսեց վազել, դիպավ մի քարի ու վայր ընկավ։ Պայուսակը թռավ Տղայի ձեռքից, իսկ նրա միջից՝ մի այլ պայուսակ, որի մեջ թղթեր կային, թաշկինակ, շրթներկ, հայելի, սանր ու անձնագիր՝ անծանոթ հորաքրոջ անձնագիրը...այն հորաքրոջ, որի պատճառով Տղան որոշեց դասի չգնալ։



— Ներեցեք, քեռի՛ ջան, ես դիտմամբ չարեցի...

Բայց այդ քեռու համար, ըստ երևույթին, կարևորն այն չէր՝ Տղան դիտմամբ էր իրեն գցել.

թե պատահաբար։ Քեռին, երևի ցավից, գրկել էր իր նիհար փորը, գլուխը ծամածռել ու աչքերը հառել գետնին ընկած կանաչի պայուսակին...

— Իսկ այս ի՞նչ կանաչի պայուսակ է քեզ մոտ, անպիտան տղա...

— Սա... սա... — տղան ուզում էր բացատրել, բայց հետո մտածեց՝ քեռին չի կարող օգնել, միլիցիոներ հո չի՞։ Արագ-արագ գետնից հավաքեց գրքերը, փոքրիկ պայուսակն ու վազեց։

— Բռնե՛ք... Բռնե՛ք...

Մի միլիցիոներ հայտնվեց ու բռնեց տղային։ Քեռին էլ իսկույն մոտեցավ և արագ-արագ պատմեց միլիցիոներին «անպիտան» տղայի ու կանաչի պայուսակի մասին։



Նկ. ՌՈԲԵՐՏ ԱՅՎԱԶՅԱՆԻ

— Ախա՜ս այսքան չարչարանքս... Դասից էլ իզուր ուշացա,— հառաչեց տղան։

Միլիցիոները քմծիծաղ տվեց.

— Այն ժամանակ պետք է ափսոսեիր, անուշիկս։

— Ո՞ր ժամանակ,— զարմացավ «անուշիկը»։

Երբ թռցնում էիր այս պայուսակը։

Տղան ապշեց մի պահ։ Բայց հաջորդ պահին փոքրիկ պայուսակից հանեց անձնագիրն ու բացեց այն.

— Ես չեմ թռցրել։ Սա այս հորաքրոջ պայուսակն է...

Միլիցիոները վերցրեց անձնագիրը, նայեց նկարին, հարցրեց.

— Ուրեմն, ասում ես, այս հորաքրոջ պայուսա՞կն է։

— Այո,— նորից ասաց տղան։

— Իսկ այս հորաքրոջ պայուսակն, ուրեմն, ինչպե՞ս մտավ քո պայուսակի մեջ։

— Չի մտել։ Գտա,— բացատրեց տղան։

Միլիցիոները խորամանկ ժպտաց.

— Որտեղի՞ց գտար։

— Մեր շքամուտքի մոտից։

Միլիցիոները դեռ չէր հավատում.

— Այդ ո՞վ էր գցել ձեր շքամուտքի մոտ, որ դու գտար։

— Մի տղա...

Միլիցիոները լրջացավ։ Մտածում էր՝ գուցե ճի՞շտ է ասում, ու հարցրեց.

— Ուրեմն, դու տեսա՞ր նրան։

— Իհարկե։ Ես հենց նրա ետևից էի վազում, բայց դիպա այս քեռուն,— տղան ցույց տվեց, թե որ քեռուն էր դիպել,— վայր ընկա, և նա փախավ։

Միլիցիոներն ավելի լրջացավ.

— Ո՞ր կողմը փախավ։

Տղան ցույց տվեց ուղղությունը։ Միլիցիոներն աշխուժացավ.

— Քանի՞ տարեկան կլիներ նա։

Տղան մտածեց, ասաց.

18—20։

Միլիցիոներն ավելի աշխուժացավ, աջ ցուցամատը շրջելով օդում՝ ոտքից գլուխ չափեց քեռուն, որը դեռ գրկել էր փորը։ Հետո միլիցիոները իր նույն աջ ձեռքով գրկեց տղայի ուսը, և նրանք երկուսով վազեցին «փախչողի» ուղղությամբ։ Վազում էին, և վազելու ընթացքում միլիցիոներն արագ-արագ հարցեր էր տալիս.

— Քանի՞ րոպե անցած կլինի, ուրեմն։

— Իսկի մի րոպե էլ չկա։

Միլիցիոներն այս անգամ ուրախացավ.

Չե՞ս հիշում՝ ինչ գույնի շոր էր հագին։

— Կարմիր գույնի,— ասաց տղան։

Միլիցիոներն ավելի ուրախացավ.

— Ախ, ուրեմն, կարմի՜ր...

— Այո՛, կարմիր,— կրկնեց տղան։

Միլիցիոները հրճվանքի մեջ էր.

— Ուրեմն, կարմիր, ուրե՜մն...

Եվ նրանք վազում էին։ Բայց տղան, ինքն էլ չգիտեր ինչու, հանկարծ սկսեց տխրել... Իսկ քիչ հետո, երբ հեռվում երևաց կարմիր բլուզը, և նրանք կանգ առան մի պահ, որպեսզի («ուրեմն») որոշեին, թե ինչ են անելու («ուրեմն»), տղան

ավելի տխրեց. ինչ-որ զգացում սկսել էր տանջել նրան, բայց՝ ի՞նչ, ինքն էլ չգիտեր... Եվ հետո, տղան չէր կարողանում հասկանալ նաև այն, թե ինչու՞ էր միլիցիոներն այդքան ուրախացել և շարունակ կրկնում էր՝ ուրեմն, ուրեմն...

«Կարմի՛ր, ուրեմն, կարմիր, ուրեմն... Կարմիր գույնից, ուրեմն»...

* * *

Տղան արագ-արագ քայլում էր: Կանգ առավ, նայեց ժամացույցին: Արդեն տասն անց կես էր. երրորդ դասն էր սկսվել: Վազեց: Վազում էր ու մտածում.

«Ա՜յ քեզ արկա՜ծ: Այդ հորաքրոջ պայուսակի պատճառով դասերից ուշացա: Ափսո՜ս, անպայման «5» կստանայի այսօր: Իսկ տրոլեյբուսի ակնոցավոր հորաքույրն ասաց, որ ես թրև եկող եմ: Բայց այն մյուս հորաքույրն այնպես էր ուրախացել, որ իր պայուսակն ու փողերը գտնվել են, և շարունակ թշերս համբուրում էր... Իսկ տղան մեղք էր: Երբ միլիցիոները նրան բռնեց ու ասաց. «Ուրեմն, դու՞ ես թռցրել պայուսակը, ուրեմն», նա վախից դեղնել էր: Բայց տեղն է. եթե այդքան վախկոտ է, էլ ինչու՞ է թռցնում ուրիշի պայուսակը, այն էլ այդպիսի բարի հորաքրոջ: Իսկ միլիցիոներն ինչու՞ էր այդքան ուրախացել. հո իր պայուսա՞կը չէր... Հը՞: «Ուրեմն, ի՞նչ, ուրեմն, կարմիր, ուրե՜մն»... Պա՜հ, զարմացնում էր իրեն. կարծես ինքն էր բռնել նրան...

Ես իսկի էլ չէի ուրախացել, ընդհակառակը, հիմա էլ եմ նրան խղճում: Երևի կբանտարկեն նրան... Բայց գուցե չբանտարկեն, եթե խոստանա, որ այլևս այդպիսի բան չի անի: Կանի՞, թե՞ չի անի: Երևի չի անի: Իսկ պե՞տը. լավ բարի էր, բայց այնքա՜ն խփեց ուսս, և նա էլ էր ասում՝ «Ուրեմն, ուրեմն»...

Տղան հասել էր դպրոց: Բարձրացավ աստիճաններով, կամացուկ բացեց դասարանի դուռը, մտավ ներս ու կմկմաց.

— Ներողություն... Ես... ես ուշացա... որովհետև...

Բայց տղայի «որովհետևը» չլսվեց, որովհետև միլբաժանմունքի պետը արդեն զանգահարել էր դպրոց:

Եվ դասարանը գոռաց.

— Կեցցե՛ այսօրվա հերոսը... Ուռա՜...

Իսկ օրվա հերոսը համեստությունից կարմրել, դարձել էր ճակնդեղի նման ու չգիտեր ինչ անի...

«Ուրեմն, ես ճիշտ վարվեցի... Ա՜յ քեզ արկա՜ծ»...

# Ձնծաղիկներ

ԼԻՊԱՐԻՏ ՍԱՐԳՍՅԱՆ

Ձուգել եք դուք ու զարդարել
Մեր ծորակը քարոտ.
Ձեր թերթերում բույր եք բերել
Ու գարնան ջերմ կարոտ:
Ու ձեր անուշ բույրով գերված
Հողն է զարթնում քնից.

# [illegible]

Նկ. ՌԱՖԻԿ ՀԱԿՈԲՅԱՆԻ




ոքրիկ մի առվակ էր հոսում: Նրա ճանապարհը մերթ մի քար էր կտրում, մերթ մի ուրիշը:

— Ա՛յ փոքրիկ, ու՞ր ես գնում, կկորչես մենակ:

— Ա՛յ խենթուկ, սպասիր, ու՞ր ես շտապում:

Բայց առվակը ոչ մեկին չէր պատասխանում, նա շեղում էր ճանապարհն ու գնում, ինքն էլ չիմանալով, թե ուր: Այսպես հոսելով նա հասավ մի լճակի:

— Այդ ու՞ր ես այդպես շտապում,— կապույտ աչքերը զարմացած թարթեց լճակը,— մի քիչ հանդարտվիր, շունչ առ, պառկիր այս քարի հովին:



Առվակը նորից ուզեց շարունակել ճանապարհը, բայց լճակը բորբոքվեց.




— Մեր լեռներում օրենք կա. ով անցնի քո տան մոտով, նրան պետք է հյուրընկալես, ես քեզ թույլ չեմ տա խախտել այդ օրենքը: Եվ նրա կապույտ աչքերն այնպիսի բարկությամբ նայեցին առվակին, որ սա սակվեց:

— Ախր, ես շտապում եմ, ծով պետք է հասնեմ:

— Ի՞նչ, այդ դու՞ պետք է ծով հասնես:— Լճակը նախ զարմացավ, հետո լռեց, լռեց ու տխուր-տխուր ասաց.— Գիտե՞ս, մի ժամանակ ես էլ էի ուզում գնալ ծով, բայց ճանապարհս փակեց այս փոսը: Դե, ես էլ հեռու-հեռու կապույտ սարից էի գալիս, հոգնած էի, ասացի՝ մի քիչ հանգստանամ, հետո նորից ճանապարհս կշարունակեմ: Մի քիչ աչքս կպցրի-չկպցրի, զարթնեցի՝ էլ դուրս գալու ճանապարհ չկար: Շատ տխրեցի, սկսեցի ճանապարհ փորել դուրս գալու համար, տեսա, որ անօգուտ է, ինչքան փորեցի, այնքան փոսս խորացրի: Հետո ձեռքս թափ տվեցի ու այդպես էլ մնացի:

Առվակը շատ խղճաց լճակին, ուզեց մխիթարել, բայց խոսք չգտավ.

լեռները հանգիստ չեն տալիս: Երբ ես ուրախ փչփչում եմ, ասում են՝ լռիր, ձանձրացնում ես. երբ ես հանգարտ զրուցում եմ, ասում են՝ լռիր, շատախոսում ես, մեզ մաշում ես: Դու տես, ես ինչպե՞ս ապրեմ այդ մռայլների աշխարհում: Ինքդ գիտես, որ պետք է ծիծաղեմ, պետք է շատախոսեմ, վազեմ, խաղամ: Այնքան էին ինձ սաստել, որ ես սառել մնացել էի: Մեր արծիվը մի օր ինձ ասաց, որ հեռվում մեծ ծով կա, այնտեղ կարելի է ազատ զգալ, վազել, խաղալ: Ես էլ ճանապարհ եմ ընկել, որ ծով հասնեմ, բայց չգիտեմ ինչպես գնամ:

— Ինքս էլ չգիտեմ, հարցրու քարայծին:

Առվակը հոսեց, հոսեց ու հանդիպեց քարայծին:

— Քարայծ, ա՛յ քարայծ, ինչպե՞ս հասնեմ ծով,— հարցրեց առվակը:

— Մի կում ջուր տուր ասեմ:

— Խմի՛ր:

Քարայծը կուշտ խմեց ու ասաց.

— Լավն է ջուրդ, բայց ես չգիտեմ, հարցրու եղնիկին:

Առվակը հոսեց-հոսեց ու հանդիպեց եղնիկին.

— Եղնիկ, ա՛յ եղնիկ, ասա ինչպե՞ս գնամ ծով:

Եղնիկը տխուր նայեց առվակին.

— Ես գիտեմ անտառի տեղը, ես գիտեմ որտեղ են աճում ամենահամեղ խոտերը, բայց թե որտեղ է ծովը, չգիտեմ:

Առվակը հենց այն է՝ ուզում էր գնալ, երբ եղնիկը հակվեց նրա վրա, հանգարտ խմեց առվակի ջրից ու բարի ճանապարհ մաղթեց նրան:

Առվակը ճամփին հանդիպեց մի հալածվող նա-



ԱՆԺԵԼԻԿ ՀԱԿՈԲՅԱՆ

— Գիտե՞ս, քեզ համար այստեղ լավ է, շուրջդ կանաչ է, տեղդ հարմար: Իմ բանն ուրիշ է, ինձ

պաստակի: Ծղրիկն այնքան արագ թռավ առվակի վրայով, որ առվակը չհասցրեց մի անգամ մի հարց տալ: Նա հոսեց-հոսեց ու մեկ էլ տեսավ մի վա-

բազի, որ դեպի իրեն էր գալիս: Վարազը ցեխոտ էր, հոգնած: Առվակը առանց մի բառ ասելու լվաց նրան, մաքրեց, զովացրեց: Վարազը փնչացրեց և մրթմրթալով գնաց պառկեց մոտիկ ցեխի մեջ:

— Էհ, ինչ արած. նրա սովորությունն էլ այդ է,— մտածեց առվակը ու իր ճանապարհը շարունակեց:

Նա գնում էր գիշեր-ցերեկ, բայց դեռ ծովը չէր երևում:

— Որտե՞ղ է ծովը, խոտեր, ծաղիկներ,— շոգից հևասպառ հարցնում էր առվակը:

— Որտե՞ղ է ծովը, բարի գազաններ,— գիշերվա լռության մեջ կարկաչում էր առվակը:

Բայց լռում էին թե՛ խոտերն ու ծաղիկները, թե՛ գազանները: Նրանցից ոչ ոք չգիտեր, թե որտեղ է ծովը, բայց ամեն ոք առվակից մի կում ջուր էր խնդրում: Առվակը ոչ ոքի չէր մերժում. նրանք խմում էին ջուրն ու ճանապարհում առվակին:

# ՇՈՒՇԱՆԸ

*ԱԼԵՔՍԱՆԴՐ ԱՐԱՔՍՄԱՆՅԱՆ*

Այս գիշեր Շուշանը քնել չկարողացավ:

Ամբողջ ընտանիքով պատրաստվում էին ամառանոց գնալ և հանկարծ... հիվանդացավ տատիկը: Նրան չի կարելի մենակ թողնել, ո՞վ պիտի խնամի:

Ահա, արդեն երկու օր է հայրիկն ու մայրիկը ելք են փնտրում: Սարսափելի շոգ է, շնչել չի լինում, իսկ բժիշկն ասում է, որ տատիկը դեռ երկար պիտի պառկի:

Ա՜յ քեզ դժբախտություն:

Հայրիկն առաջարկեց տատիկին տեղափոխել հիվանդանոց: Մայրիկն այդ մասին լսել անգամ չի ուզում: Շուշանը նույնպես դեմ է, թեև խոհեմաբար լռում է ու տագնապով նայում մորը. վերջ ի վերջո հանկարծ չհամաձայնի՜ տատիկին հիվանդանոց տեղափոխել:

Հետո հայրիկն ասում է, որ Շուշանը մեղք է, փոխադրվել է չորրորդ դասարան, ամբողջ տարին լավ է սովորել, նրան մաքուր օդ ու հանգիստ է պետք:

Հայրիկը ճիշտ է ասում, բայց տատիկին թողնել չի կարելի:

Ու Շուշանը քնել չի կարողանում:

Անցյալ տարի նա եղել է անտառամերձ այդ ամառանոցում: Անտառը տնից մի քանի քայլի վրա է: Քիչ հեռու վազում է վտակը, իսկ արևն այնքան բարի, այնքան շոյող է, չես ուզում, որ մայր մտնի:

Շուշանն այնքան պարզ ու շոշափելի է տեսնում այդ ամենը, որ չի ուզում աչքերը բանալ...

«Ա՜խ, սիրելի տատիկ, ինչո՞ւ հիվանդացար...»

Ոչ, հիվանդանոց տանել չի կարելի, ոչ մի դեպքում: Եվ ամառանոցից հրաժարվելն է դժվար: Ի՞նչ անել:

Շուշանը քնել չի կարողանում...

...Ամեն օր վտակում լողանում են, իսկ տղաները ձուկ են որսում: Շուշանը խղճում է ձկներին, որոնք փոքրիկ դույլի մեջ թպրտում, ուզում են դուրս պրծնել: Հետո ընկերներով բարձրանում են անտառ: Այնտեղ վայրի խնձոր ու տանձ են քաղում: Ծառն ու թուփն այնքան շատ են, որ կարող ես թաքնվել ուր որ ուզես:

— Հե՜յ,— կանչում ես,— հե՜յ...

Բայց պահմտածին չես կարող գտնել: Ձայն ես տալիս՝ այստե՛ղ եմ, հետո փախչում, թաքչում ես կենում



Միայն հողն էր, որ չէր ուզում նրան բաց թողնել: Նա առվակի դեմ էր հանում բոլոր քարերը:

— Ա՛յ խենթ, փոքրիկ ես, մենակ կկորչես, մի՛ գնա:

— Ա՛յ խենթ, փոքրիկ ես, ծովը քեզ կուլ կտա, մի՛ գնա:

Բայց առվակը թեքում էր ճամփան ու գլգլալով գնում: Հողը հասկացավ, որ նրան քարկոծելով չի պահի, սկսեց նրա ջրից շատ-շատ խմել: Առուն ինքն էլ չէր նկատում, որ բարակել է: Շատ էր գնացել, թե քիչ, մի օր էլ կանգնեց ու ետ նայեց, իր ճամփին, որտեղից անցել էր, կանաչ ու սիրուն մի հետք էր թողել: Խոտերն ու ծաղիկները նրա հայացքից մեղմ օրորվեցին:

Սիրուն էր առվակի անցած ճամփան, բայց էլ ուժ չկար շարունակելու: Նա նայեց իրենով կյանք առած ծաղիկներին ու խոտերին, ճանապարհը թեքեց ու հոգնած-հոգնած մտավ կանաչ մի մարգագետին:

---

ուրիշ ծառի հետևում, հետո՝ ուրիշ, և էլի կանչում ես՝ հե՜յ, հե՜յ...

Շուշանը քնել չի կարողանում:

...Տատիկն ամեն բան չի ուտում: Նա սիրում է, որ իր համար գիրք կարդան: Հիվանդանոցում սիրտը կնեղվի ու ավելի կհիվանդանա: Ինչ լավ է, որ մայրիկը չի համաձայնում տատիկին հիվանդանոց տեղափոխել...



Նկ. ՄԱՆՈՒԿ ՂՐԴՅԱՆԻ

Եվ լուսաբացին միայն Շուշանը քուն մտավ:

Ու մի հիանալի երազ տեսավ:

Տատիկը լավացել է: Մեքենան սլանում է ամառանոց: Անտառաբնակ չորքոտանիները, թևավորները կանգնած խճուղու վրա՝ դիմավորում են: Տունը փոխվել է, կարծես արծաթից է շինված ու հայելու նման փայլում է: Շուշանը նայում է տան պատին, տեսնում է իրեն ամբողջ հասակով ու սանրվում է:

Իսկ տատիկը վազելով բարձրանում է անտառ, ու Շուշանը չի հասնում նրան:

— Հե՜յ, հե՜յ, տատիկ,— կանչում է Շուշանը, իսկ տատիկը չկա, թաքնվել է ծառի ետևում:

Շուշանը հասկանում է, տատիկն ուզում է պահմըտոցի խաղալ: Թաքնվել է, և Շուշանը ոչ մի կերպ չի կարողանում նրան գտնել...

...Առավոտյան Շուշանը ելնում է անկողնուց ինչ-որ բան հաստատ վճռած: Նայում է մայրիկին, նայում է հայրիկին և չի համարձակվում հայտնել իր վճիռը:

— Այս տարի ամառանոց չենք գնա,— ասում է հայրիկը։

Շուշանն այլևս չի համբերում.

— Դուք գնացեք ամառանոց, իսկ ես կխնամեմ տատիկին, կլավացնեմ ու միասին կգանք ձեզ մոտ։

Հայրիկն ու մայրիկը զարմացած իրար են նայում։ Չեն հավատում իրենց լսածին։ Իհարկե, չեն համաձայնում։ Իսկ Շուշանը համառորեն համոզում է նրանց.

— Ես ամեն ինչ գիտեմ անել. շոր լվանալ, խանութ գնալ։ Չե՞ք հիշում, քանի անգամ հաց, շաքար ու կարագ եմ գնել։ Տատիկը շատ է սիրում բժշկական երշիկը, այն, որ անյուղ է։ Կպահեմ սառնարանում, որ չփչանա։ Ես ճաշ էլ կարող եմ պատրաստել։ Դուք մթերք կթողնեք, իսկ ես կամաց-կամաց կպատրաստեմ։

— Իսկ ի՞նչ կպատրաստես,— հարցրեց մայրիկը։

— Թանով սպաս... Տատիկը շատ է սիրում։ Պիտի այնքան խառնել, մինչև եփը գա ու չկտրվի։ Կարտոֆիլ կտապակեմ։ Կմաքրեմ, խոշոր-խոշոր կկտրտեմ, կլցնեմ թավայի մեջ, կարագ կդնեմ ու բերանը կփակեմ, որ տապակվի գոլորշիով։

— Չե՞ս այրի։

— Ինչո՞ւ պիտի այրեմ։ Հենց որ մի կողմը կարմրեց, շուռ կտամ մյուս կողմը։

Երկու օր անընդհատ Շուշանը համոզում էր։ Ամեն օր իր գիտելիքներից մի նոր բան էր պատմում հայրիկին ու մայրիկին։

Շուշանի մտադրության մասին իմացավ նաև տատիկը։ Շատ ուրախացավ։ Ասաց, որ Շուշանի հետ իրեն շատ լավ կզգա ու ոչնչից չի վախենա։

Վերջապես հայրիկն ու մայրիկը համոզվեցին, ցուցմունքներ տվին, սառնարանը լցրեցին զանազան համեղ ուտելիքներով ու մեկնեցին ամառանոց։

Երբ Շուշանը տատիկի հետ մենակ մնաց, սիրտը մի տեսակ կուչ եկավ, գնաց խոհանոց, մի քիչ լաց եղավ, հետո վերադառնալով տատիկի մոտ, հարցրեց.

— Տատիկ ջան, ի՞նչ ես ուզում։

— Մի բան կարդա, թոռնիկս։

Հայրիկի գրադարանից Շուշանը մի գիրք գտավ, որն իր կարծիքով տատիկը պիտի հավաներ, ու սկսեց կարդալ։ Կարդում էր, բարձր, որովհետև տատիկը լավ չէր լսում։

Հետո եկավ բժիշկը։ Նորից քննեց տատիկին, դեղատոմս գրեց ու նորից ասաց, որ տատիկը երկար պիտի պառկի ու գնաց։

Շուշանը գնաց դեղատուն։ Հեռու չէր, այնպես որ գնաց ոտքով։ Պատվիրեց դեղը և որոշեց տատիկի համար խաղող գնել։

Խանութի առաջ հերթը մեծ չէր, այնուամենայնիվ՝ ամեն րոպեն թանկ էր. տատիկին մենակ թողնել չէր կարելի։ Շուշանը մոտեցավ հերթին, բոլորին բացատրեց, որ տատիկը հիվանդ է, որ տանը մարդ չկա, և նրան թույլ տվին հերթից դուրս խաղող գնել։ Իսկ վաճառողը ընտրեց ամենահյութեղին, ամենաքաղցր խաղողը։ Շուշանը շնորհակալություն հայտնեց բոլորին ու վազեց տուն։

Ճիշտ էր գուշակել։ Տատիկը խաղողը կերավ մեծ ախորժակով։ Զարմանալի է տատիկը, երբեք չի ա-




ՄՈՎՍԵՍ ՑԱՌՆՈՒՆՑ

Ոտիկներին՝ ծաղկափոշի,
Կնճիթի մեջ՝ անուշ նեկտար,
Թևիկներին՝ ծաղիկների
Առավոտյան շաղը հստակ՝
Տուն էր դառնում ուրախ, զվարթ.
Մեղրի բույրով երգն իր գեղում
Ծաղկին, հողին ու արևին՝
Աշխատասեր մի ժիր մեղու։
Բայց մոլորված մի գիժ քամի
Սարի լանջից թափով փչեց
Ու խեղճ մեղվին միանգամից
Տարավ աղբի փոսը գցեց։

Այս որ տեսավ մեր սենյակի
Ճանճը աղտոտ ու աներես,
Քշված հարկից՝ իր վատ վարքից,
Դարձավ մեղվին, խոսեց այսպես.
—Ա՛յ թե ուր է խսկությունը,
Քույրիկ մեղու, և քո տունը.
Դե, թող տեսնեն նրանք հիմա—
Այդ կարճամիտ մարդիկ հիմար,
Թե վատն ո՞վ է մեզնից, կեղծը,
Ո՞վ է վազում դեպի կեղտը,
Ո՞վ է բերում ցավ ու վարակ
Ու տարածում համաճարակ։
Եվ ինչո՞ւ են մարդիկ տգետ
Հետապնդում, կռվում ինձ հետ—

սում, թե ինչ է ուզում ուտել: Իսկ գուշակելը, թե ինչ է ուզում, շատ դժվար է:

Ամառանոցից զանգ տվին հայրիկն ու մայրիկը: Հարցուփորձ արին՝ ինչպե՞ս է տատիկը, ի՞նչ է անում իրենց աղջիկը: Իսկ Շուշանը պատմեց, թե ինչպես դեղ է պատվիրել, խաղող է գնել տատիկի համար...

Տատիկը շատ գոհ մնաց Շուշանի պատրաստած թանով սպասից: Գովեց, ասաց, որ նման համեղ սպաս երբեք չի կերել: Մյուս օրն էլ գովեց տապակած կարտոֆիլը:

Ամեն առավոտ Շուշանը սենյակները մաքրում էր, լվանում կեղտոտ շորերն ու ամանները, միացնում ռադիոընդունիչը, որ տատիկը երաժշտություն լսի: Ճաշից հետո պարտադիր կերպով ընթերցանության ժամ էր, իսկ երեկոյան, երբ լույսերը վառվում էին, Շուշանը տատիկի համար արտասանում էր իր սիրած բանաստեղծությունները:

Հայրիկն ու մայրիկը ամեն օր զանգ էին տալիս: Եվ ամեն օր Շուշանը մանրամասն պատմում էր տատիկի վիճակի ու իր կատարած գործերի մասին: Հետո այլևս չէր պատմում, որովհետև մի օրը մյուսին շատ էր նման:

Հանկարծ տատիկը հրաժարվեց դեղեր ընդունելուց: Շուշանը շատ համոզեց նրան, բայց տատիկի համառությունը կոտրել չկարողացավ:

— Ախր, տատիկ, դու պիտի առողջանաս,— ասում էր Շուշանը:

— Կառողջանամ, բալաս, կառողջանամ,— պատասխանում էր տատիկը և նրա չոր ու խորշոմած դեմքի վրա գոյանում էր մի բարի ժպիտ:

Անցավ մի շաբաթ:

Մի օր, առավոտ վաղ Շուշանը արթնացավ ինչ-որ քայլերի ձայնից: Աչքերը կիսաբաց արեց, վեր թռավ անկողնուց: Ո՞վ պիտի լինի: Ու զարմանքից բացականչեց.

— Տատի՛կ, դո՞ւ ես...

— Ես եմ, բալաս, ես եմ:

— Ինչո՞ւ ես հագնվել, տատիկ:

— Առողջացել եմ, բալաս, վեր եմ կացել: Հավատա, առողջ եմ: Դու ինձ այնպես լավ խնամեցիր, որ առողջացա:

Շուշանը նայում էր ու աչքերին չէր հավատում: Ախր բժիշկն ասում էր, թե երկար պիտի պառկի...

Տատիկը, ճիշտ է, մի քիչ անվստահ էր քայլում, բայց գունատությունն անցել էր: Այնուամենայնիվ Շուշանը վախեցավ.

— Չէ, տատիկ, չի կարելի, պառկի՛ր: Մինչև բժիշկը թույլ չտա...

— Իմ բժիշկը դու էիր, Շուշանս, որ լավացրիր: Հա՛, հա՛, քեզ նայեցի ու լավացա, քո ճաշերը կերա ու լավացա, քո դեղերը խմեցի ու լավացա:

Հետո ավելացրեց.

— Մի երկու օր էլ անցնի, միասին կգնանք ամառանոց...

Շուշանը քիչ էր մնում հարցներ՝ իսկ պահմտոցի՞ կխաղանք: Բայց հարցի փոխարեն նա նետվեց տատիկի գիրկը՝ արցունքը աչքերին: Իսկ տատիկը իր սմքած ձեռքերով շոյում էր թոռնիկի դեռ չսանրած մազերը...

# ՄԵՂՈՒՆ

*Ինձնից ծծկում կաթ ու մածուն,*
*Մեղր ու կարագ, շաքար ու հաց,*
*Իսկ քեզ համար սրտերը բաց՝*
*Ե՛վ տաք փեթակ, և՛ տուն, և՛ դուռ.*
*Սոմաթերթեր, շաքարաջուր:*
*Երբ քիչ լռեց ճանճը փրչոտ,*
*Ստահոգի, սաստիկ փչող,*
*Մեղուն ասաց. «Իզուր ես դու*
*Ջարախոսում, ինձ զրպարտում,*
*Թեկուզ ընկա ես ակամա*
*Քո այս սիրած աղբի փոսը,*
*Ու՞ր ապրում է չարախոսդ,*
*Բայց վատին միշտ խորթ, անընտել,*
*Ես չեմ դառնա նրան ընկեր»:*

Նկ. ԳԱԳԻԿ ԳԱՍՊԱՐՅԱՆԻ

# Ինչ լավ է

ՎԻԼԱՄ ՀՈՎՍԵՓՅԱՆ

Ծով արտը խշշում է, սիրուն է.
Ջինջ առուն վշշում է, սիրուն է.
Արևը արտերն է գիրկն առել.
Ծաղիկը շրշում է, սիրուն է:
Թիթեռը խաղում է, ինչ լա՜վ է.
Ցողունը շաղում է, ինչ լա՜վ է:
Գարուն է, լցվել է թուխ ամպը.
Գոլ անձրև մաղում է, ինչ լա՜վ է:
Մեր հանդը հերկ ունի, անու՜շ է.
Նախշ ունի,ներկ ունի, անու՜շ է.
Մեր հանդը կորել է կանաչում.
Բյուր հազար երգ ունի, անու՜շ է:
Սիրտը չի ճանճրանում, ինչ լա՜վ է,
Ճամփան է քաղցրանում, ինչ լա՜վ է.
Ես փոքրիկ տուրիստ եմ պատանի
Ու լեռն եմ բարձրանում, ինչ լա՜վ է:



# ԹԵ ԻՆՉՊԵՍ ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹՅՈՒՆ ԳՐԵՑԻ

ՎԻԿՏՈՐ ԳՈԼՅԱՎԿԻՆ

Մի անգամ քայլում եմ պիոներական ճամբարով և քայլերիս համաչափ ինչ-որ երգ շշնջում քթիս տակ: Մեկ էլ տեսնեմ՝ ռիթմ է ստացվում: «Ա՜յ քեզ նորություն,— մտածում եմ,— ուրեմն տաղանդ ունեմ»: Վազեցի պատի թերթի խմբագրի մոտ:

Խմբագիր Ժենկան ուրախությունից պար եկավ:

— Հիանալի է, որ դու բանաստեղծ ես դարձել: Գրիր և չգոռոզանաս:

Ես գրեցի բանաստեղծություն արևի մասին:

Արևի լույսն է թափվում
Իմ գլխի վրա,
Եվ գլուխս դրանից
Շատ լավ է հիմա:

— Այսօր առավոտից անձրև է գալիս,—ասաց Ժենկան,— իսկ դու արևի մասին ես գրում: Տղաները կծիծաղեն, ձեռ կառնեն: Գրիր անձրևի մասին: Թե, իբր, ոչինչ, որ անձրև է գալիս, մենք, միևնույնն է, առույգ ենք և այլն:

Սկսեցի գրել անձրևի մասին: Ճիշտ է, շատ չարչարվեցի, չէր ստացվում, բայց վերջ ի վերջո ստացվեց.

Անձրևի ջուրն է թափվում
Իմ գլխի վրա,
Եվ գլուխս դրանից
Շատ լավ է հիմա:

— Բախտդ չի բերում,— ասաց Ժենկան,—ախր անձրևը կտրվել է: Եվ արևն էլ դեռ չի երևում:

Նստեցի, սկսեցի գրել միջին եղանակի մասին: Էլի չէր ստացվում, բայց վերջում ստացվեց.

Ոչ մի բան էլ չի թափվում
Իմ գլխի վրա,
Եվ գլուխս դրանից
Շատ լավ է հիմա:

Խմբագիր Ժենկան ինձ ասաց.

— Տե՛ս, արևը կրկին դուրս է եկել:

Ես իսկույն հասկացա, թե բանն ինչումն է, և հաջորդ օրը գրեցի ահա այս բանաստեղծությունը.

Արևի լույսն է թափվում
Իմ գլխի վրա,
Անձրևի ջուրն է թափվում
Իմ գլխի վրա,
Ոչ մի բան էլ չի թափվում
Իմ գլխի վրա,
Եվ գլուխս դրանից
Շատ լավ է հիմա:




## «ԵԹԵ ԵՍ ՖՅՈՒՐԵՐ ԼԻՆԵԻ...»

Մի անգամ, դպրոցական դասերի ժամանակ ուսուցիչ Օտտո Վերները բռունցքներով հարձակվեց աշակերտների վրա: Նա այնպես ծեծեց Հելմուտ Ֆոգելին, որ տղան չկարողացավ անգամ բարձրանալ: Տղայի ամբողջ մարմինը կապտած էր և արյան մեջ կորած:

«Եթե մյուս դասը չիմանաս, ես քեզ կսպանեմ, — գոռում էր ուսուցիչը, ոտքով խփելով գետնին թավալվող Հելմուտին: Առաջ ձեզ նմաններին գազով խեղ-



դամահ էին անում համակենտրոնացման ճամբարներում: Եթե ես ֆյուրեր լինեի, ձեզ բոլորիդ կգնդակահարեի»:

Իսկ որ Օտտո Վերները նախկին հիտլերական է, յուրաքանչյուրը գիտի Լաուինհեր քաղաքում: Բայց և այնպես ծնողները իրենց երեխաներին ուղարկում են նրա մոտ սովորելու: Չէ՞ որ Արևմտյան Գերմանիայում այդպիսի «դաստիարակները» հավանություն են գտնում կառավարող շրջաններում:

## ՔԱՂԱՔԱՅԻՆ ԿՈՎԱՐԱՐՆԵՐԸ

Գերմանական հինավուրց Դյուսելդորֆ քաղաքի հետաքրքրություններից մեկը փողոցային ակրոբատներն են: Ասում են, որ շատ տարիներ առաջ այստեղ մի փոքրիկ ակրոբատ իր օրվա հացը վաստակում էր նրանով, որ ամբոխի զվարճությունների ժամանակ գլուխկոնծի էր տալիս հրապարակի կենտրոնում:

Բայց հիմա ժամանակները փոխվել են: Ներկայումս Դյուսելդորֆը համարում են Արևմտյան Գերմանիայի «փողի բակը»: Այստեղ շատ բանկեր և հարուստ ֆիրմաներ կան: Բայց պատանի ակրոբատներին հիմա էլ կարելի է հանդիպել քաղաքային հրապարակում՝ ջրավազանի մոտ:

Այդ ճարպիկ տղաները կարող են «պտտանիվ» կատարել, չհանելով անվավոր չմուշկները, նույնիսկ օդապարիկներն էլ ձեռքներին:

«Քաղաքային կովարարներին», ինչպես Դյուսելդորֆում անվանում են փոքրիկ ակրոբատներին, ցույց են տալիս զբոսաշրջիկներին՝ Գյոթեի թանգարանի և այն տան հետ, որտեղ ապրել է Նապոլեոնը:

## Դ Ժ Բ Ա Խ Տ Ս Ա Ն Դ Ր Ա Ն

**Հ**արավային Աֆրիկայի Տրանսվաալ նահանգի 11-ամյա բնակչուհի Սանդրա Լենգի կյանքը լի է վիրավորանքներով, որոնց պատճառը նա չի կարողանում հասկանալ:

Սանդրան սպիտակամորթ է: Երկու տարի նա հաճախում էր հարևան Պիետ Ռետիֆ քաղաքի սպիտակամորթների դպրոցը: Բայց Հարավային Աֆրիկայում միայն սպիտակ մաշկ ունենալը քիչ է, որպեսզի համարվեն սպիտակամորթ: Տեղական իշխանությունները փոքրիկ Սանդրային դասեցին գունավորների շարքը, և նա դուրս մնաց դպրոցից:

Սանդրայի հայրը՝ Աբրահամ Լենգը, պահանջեց վերանայել այդ որոշումը, և աղջիկը նորից համարվեց սպիտակամորթ: Բայց... ծնողական խորհուրդը Սանդրային արգելեց ապրել դպրոցի հանրակացարանում: Իսկ առանց դրա նա չէր կարող դպրոց հաճախել:

Նրա համադասարանցիներըն արդեն առաջին կիսամյակի քննություններն են հանձնել, իսկ Սանդրան դեռ նստած է տանը:

«Այս երեխայի կյանքը խորտակված է», — հայտարարել է Տրանսվաալ նահանգի դեպուտատ Հենրի Շվարցը:

Սանդրայի հայրը դեռևս չի հուսահատվում: «Իմ երեխայի դժբախտության համար մեղավոր է կառավարությունը, — հայտարարել է նա և ավելացրել. — Ես կպայքարեմ մինչև վերջ»:

Բայց և այնպես շատ քիչ է հավանական, որ Սանդրան նույնիսկ հաջորդ տարվա առաջին քառորդին կկարողանա մասնակցել դասերին:



# ԿԱՊԻՏԱՆ ՄԱՅՆ ՌԻԴ

(Մայն Ռիդի ծննդյան 150-ամյակի առթիվ)

*«Բայց դա սովորական ձի է՝ թամբը վրան ու սանձը բերանին։ Նրա տեսքը երկյուղալի ոչինչ չունի։ Գուցե ձիավորն է վախեցրել եղջերուին։ Նա մի տեսակ արտասովոր է, աչքի համար, անտարակույս։*

*Ձիավորը գլուխ չունի»։*

Այո, դուք ճիշտ կռահեցիք։ Մարիս Չերազի թարգմանությամբ այս փոքրիկ հատվածը արկածային գրականության սիրահար ընթերցողներին շատ լավ հայտնի «Անգլուխ ձիավորը» վեպից է, որի հեղինակը Թոմաս Մայն Ռիդն է։

Պատանիների սիրելի գրողը իրեն անվանում էր «Կապիտան Մայն Ռիդ» և հենց այդպես էլ ստորագրում էր։

Թոմասի հայրը քահանա էր և շատ էր ուզում, որ իր որդին էլ անպայման քահանա դառնա։ Սակայն ապագա գրողը խուսափում էր այդ տխուր մասնագիտությունից և 1840 թվականին, երբ հազիվ էր բոլորել նրա քսաներկու տարին, հեռացավ հայրական տնից, հեռացավ իր հայրենիքից՝ Իռլանդիայից և մեկնեց հեռավոր Ամերիկա։ Այն ժամանակ էլ, ինչպես, տարածված էին նույն կեղծ լուրերը, թե Միացյալ Նահանգներում ամենից ճիշտ գործը հարստանալն է։ Դյուրահավատ պատանին, ափ իջնելով Նոր Օռլեանում, անմիջապես հուսախաբ եղավ։ Նա ստիպված էր սեփական փորձի վրա համոզվել, որ ապրելու համար անհրաժեշտ է աշխատել։

Սկզբում փորձեց առևտրով զբաղվել։ Բայց դրանից ոչինչ չստացվեց։ Ուրիշ աշխատանքի անցավ մի պլանտատորի մոտ ու այնտեղից էլ հեռացավ, չկարողանալով հանդուրժել այն գազանային վերաբերմունքը, որ սպիտակամորթ վերակացուները դրսևորում էին սևամորթ ստրուկների նկատմամբ։ Հետո նա դարձավ գերասան, ապա՝ դասատու։ Եվ այդ տարիներին, քանի որ ճանապարհորդությամբ անհանգիստ երիտասարդ էր, երկարատև ճանապարհորդությունների էր գնում գալիս հարավային նահանգներում, նավարկում էր Մեքսիկայի ջրառատ գետերով, կտրում-անցնում էր անծայրածիր պրերիաները։ Մոտ երեք տարի գրեթե թափառականի կյանք վարելուց հետո, նա բնակություն հաստատեց Ֆիլադելֆիա քաղաքում և կատարեց գրական իր առաջին փորձերը։ 1846 թվականին Թոմաս Մայն Ռիդը արդեն հանրահայտ լրագրող էր։ Նրան հրավիրեցին Նյու-Յորք՝ ամենախոշոր թերթերից մեկին աշխատակցելու։

Սակայն արկածները կրնկակոխ հետևում էին արկածային գրականության ապագա հիմնադիրներից մեկին։ Երբ սկսվեց Միացյալ Նահանգների պատերազմը Մեքսիկայի դեմ, մի պատերազմ, որի ծածուկ նպատակը Տեխասն ու Կալիֆոռնիան գրավելն էր, Մայն Ռիդը ընկավ գործող բանակ։ Նրան տվեցին կապիտանի կոչում։ 1847 թվականին Մեխիկո քաղաքի վրա կատարվող գրոհի ժամանակ կապիտան Թոմաս Մայն Ռիդը ծանր վիրավորվեց ու մնաց ռազմադաշտում։ Ճակատամարտն ավարտվելուց հետո միայն Մայն Ռիդին գտան զինվորների կույտի միջից, և նա բախտի երջանիկ բերումով առողջացավ ու ոտքի կանգնեց։

Ինչպես երկարատև ճանապարհորդությունները, այնպես էլ այս արյունահեղ պատերազմը շատ բաներ սովորեցրին իռլանդացի երիտասարդին, որի հայրենիքը գտնվում էր նույնպիսի հալածված ու ճնշված վիճակում, ինչպես Մեքսիկան ու ամերիկյան հնդիկների ցեղերը։

Երբ 1848 թվականին Եվրոպայում սկսվեցին հեղափոխական իրադարձությունները, երբ հրապարակվեց Մարքսի և Էնգելսի «Կոմունիստական կուսակցության մանիֆեստը», որը կոչ էր անում պայքարել բուրժուազիայի տիրապետության դեմ, աշխարհի յուրաքանչյուր ու պայծառ մարդիկ համոզված էին, թե սկսվել է մի նոր դարաշրջան, որ այդ հեղափոխական իրադարձությունները Եվրոպայի ժողովուրդներին կազատագրեն ճնշումից ու շահագործումից։ Կապիտան Մայն Ռիդը շտապեց Եվրոպա՝ մասնակցելու հեղափոխական այդ պայքարին։ Սակայն նա ուշ հասավ արդեն այն ժամանակ, երբ հետադիմական ուժերը արյան մեջ խեղդել էին Իտալիայում, Հունգարիայում, Իռլանդիայում և այլուր բռնկված ապստամբությունները ու հեղափոխական շարժումը։

Մայն Ռիդը հաստատվեց Լոնդոնում, որովհետև այդ տարիներին Անգլիայի մայրաքաղաքում էին

ապրում հեղափոխության բազմաթիվ մարտիկներ։ Նա մտերմացավ հունգարական հեղափոխության առաջնորդ Լայոշ Կոշուտի հետ, ու երբ անգլիական թերթերը սկսեցին հալածել Կոշուտին, Մայն Ռիդը հրապարակորեն պաշտպանեց հունգարացի հեղափոխականին։

Ծանր էր կապիտան Մայն Ռիդի կյանքը։ Այն ամենը, ինչ նա երիտասարդական տարիներին համարում էր ռոմանտիկ արկածներ, իրականում ծանրություններ էին ու անհաջողություններ։ Բայց նա համառ մարդ էր, չէր տրտնջում և չէր հուսալքվում։ Թեև կյանքի վերջին տարիներին վատթարացավ նրա առողջությունը, սակայն կապիտան Մայն Ռիդը համառորեն զբաղվում էր իր հոգուն ու սրտին հարազատ գործով։

Նա գրում էր։

Գրում էր այն ստեղծագործությունները, որոնց շնորհիվ նա դարձավ արկածային գրականության նշանավոր դեմքերից մեկը։ Անգլիայում Մայն Ռիդի նկատմամբ թշնամական վերաբերմունք կար, որովհետև ազատատենչ Իռլանդիայի զավակը իր վեպերում և վիպակներում արտահայտում էր իր համակրանքը ճնշված ու ազատազրկված ժողովուրդների նկատմամբ, որովհետև նրա գրքերը տոգորված էին մարդասիրական զգացումներով։

Հայ ընթերցողին առայժմ հայտնի է Մայն Ռիդի վեպերից մեկը միայն՝ «Անգլուխ ձիավորը»։ Սակայն նրա լավագույն ստեղծագործություններից են «Սպիտակ առաջնորդը», «Փվարտերոնուհին», «Սեմինոլների առաջնորդ Օցեոլան», «Սպիտակ ձեռնոցը», «Բորնեոյի թավուտներում», «Մուրաններ» վեպերը, որոնք վաղուց ի վեր մտել են համաշխարհային պատանեկան գրականության գանձարանը։

Մայն Ռիդը իր կենդանության օրոք չհասցրեց դառնալ ազատության բանակի կապիտան, դեպքերի բերումով նա չկարողացավ անմիջական մասնակցություն ունենալ Եվրոպայում ծավալված հեղափոխական իրադարձություններին։

Սակայն իր գրքերի շնորհիվ, որոնցում նա բողոքի ձայն էր բարձրացնում տրկատիրության ու հարստահարման, մարդավաճառության և ցեղասպանության դեմ, նաև մեր օրերում, երբ աշխարհի տարբեր անկյուններում դեռևս շարունակվում են այդ նույն երևույթները՝ արդեն ուրիշ քողի տակ, առաջադեմ մարդկության զավակների՝ պատանեկության համար, հիրավի ազատության բանակի կապիտան է կապիտան Մայն Ռիդը։

Կ. Ա. ՍԻՄՈՆՅԱՆ

# ՀՈՎԻՎԸ

ՍՈՒՐԵՆ ՄՈՒՐԱԴՅԱՆ

Խոր ձորերով,
Նեղ կիրճերով
Ու լանջերով բուրումնավետ
Բարձրանում է զով լեռները
Սեգ սարերի հպարտ տերը
Իր հոտի հետ։
Ջուր է խմում աղբյուրից պաղ,
Շվի փչում,
Ուրախ շրջում
Արոտներում ծաղկածիծաղ։
Հովիվ է նա
Ուժեղ ու քաջ,
Նրա հոտին չի մոտենա
Ոչ գայլ, ոչ արջ։
Ապրում է նա
Զաթինդաղի բարձր սարում,
Բայց լավ գիտի,
Թե ինչեր կան այս աշխարհում...
Մահակի հետ գիրք է դնում
Թևի տակին,
Օրվա թերթերն է ստանում
Ժամանակին։
Ա՛յ քեզ հովիվ... Տրեխներին
Հրաժեշտ է տվել վաղուց
Ու հեռավոր յայլաղում էլ
Դիտում է նա հեռուստացույց։

Նկ. ԱՐՏԱ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ






*Ավստրալիայի կենտրոնական մասերում գետերն ու ջրամբարները հաճախ ցամաքում են: Ջուրը այնտեղ էլ թանկ է գնահատվում: Բնիկները, որոնց «ջրապահեստները» գտնվում են երկրի ամենաամայի շրջաններում, դուրս են գալիս... գորտեր որսալու:*

*Ավստրալիայի գորտերը հրաշալի կերպով հարմարվել են բնությանը. տարվա ամենաչոր ժամանակ նրանք միշտ ջրի պաշար են ունենում, որն ամբարում են ստամոքսում: Եթե ավստրալիացին հաջողվի մի քանի գորտ որսալ, ուրեմն կարող է մի տափաշիշ թանկարժեք ջուր ունենալ:*



## Հեռախոս դելֆինների համար

*Ամերիկայի Միացյալ Նահանգներում սարքավորել են տարօրինակ հեռախոս... դելֆինների համար: Ֆլորիդայի շրջանում դելֆինը դունչը մտցնում է հարմարեցված ձագարաձև միկրոֆոնի մեջ և խոսում, իսկ նրա խոսակիցը, որը գտնվում է 8000 կիլոմետր հեռավորության վրա՝ Հավայան կղզիների մոտ, լսում և պատասխանում է... Այդ հեռախոսի շնորհիվ գիտնականները պարզեցին, որ Ատլանտյան և Խաղաղ օվկիանոսյան դելֆինների լեզուն նույնն է:*



## ՊԵԴԵԻՍ ՔՈՒՐՄԻ

1930 թվականի դեկտեմբերի վերջին Սովետական Միության ամենամեծ և նշանավոր թանգարանում՝ Լենինգրադի պետական Էրմիտաժում, տեղի ունեցավ մի արտասովոր դեպք:

Թանգարանի կենտրոնական սրահը վառ լուսավորված էր թանկարժեք և գեղեցիկ լուսամփոփներով: Սպիտակ պատերին փայլում էին ոսկեզօծ կարդաքանդակները: Դահլիճը լեփ-լեցուն էր: Բոլորի հայացքն ուղղված էր կենտրոնում դրված սեղանին: Սեղանի շուրջը հավաքվել էին եգիպտագետները: Սեղանի վրա դրված էր երկար մի առարկա՝ քաթանե դեղնած ժապավեններով փաթաթված: Դա մումիան էր մի եգիպտացու, որն ապրել էր մ. թ. ա. X դարում:

Մինչև Հոկտեմբերյան հեղափոխությունը բոլոր մումիաները գտնվում էին մարդաբանության և ազգագրության թանգարանում՝ Նևայի մյուս ափին, որովհետև Եկատերինա 2-րդը արգելել էր դիակների մուտքը թագավորական պալատ: Իսկ Էրմիտաժը Ձմեռային պալատի շարունակությունն էր: Ահա, թե ինչու ավելի քան հարյուր տարի մումիաները չէին ցուցադրվում նրա սրահներում:

1930 թվականին որոշվել էր քանդել մի մումիա, բաց ցուցադրելու համար: Եվ ահա հասել էր ժամանակը. գիտնականներն անցել էին գործի: Նրանք շատ զգուշ սկսեցին քանդել ժապավենները, որոնցով փաթաթել էին մումիան երեք հազար տարի առաջ:

Մեկ, երկու, երեք... Ժապավենները երկար էին՝ չորս-հինգ մետրանոց: Հետո սկսեցին երևալ կարճ ժապավենները, որոնք հանում էին ձեռքերից և ոտքերից, գլխից և վզից: Ժապավեններից մի քանիսը լայն էին, մյուսները՝ նեղ: Վերջապես հանում են վերջին՝ երկուհարյուրերրորդ ժապավենը: Ժապավեններից մեկի վրա մակագրություն կար: Եվ եգիպտագետներն անհամբեր կարդացին հին հիերոգլիֆները՝ «Քուրմ Պեդեիս»: Հայերեն այդ անունը նշանակում է «Իբիսից ընծայված»:

Ժապավեններից բացի մումիան փաթաթված էր քաթանի մի մեծ կտորով: Ամենադժվարը դա հանելն էր, որովհետև շատ ամուր էր կպել մարմնին: Իհարկե, գիտնա-

## Վագրից եւ վտանգավոր



*Հազիվ թե գազանանոցից փախած վագրը այնքան անախորժություն պատճառեր Իսպանիայի Գրենադա քաղաքի բնակիչներին, որքան այդ արևից վանդակից դուրս պրծած թութակը: Դժբախտությունը նրանում էր, որ թութակը վարպետորեն ընդօրինակում էր հերթապահ ոստիկանի սուլոցը: Չորս օր շարունակ փողոցներում հնչում էր նրա սուլոցը, և երթևեկությունը խանգարվել էր:*

*Հինգերորդ օրը միայն հաջողվեց բռնել փետրավոր խաբեբային:*



* * *

*Ավստրալիայի հյուսիսային մասում կան թիթեռներ, որոնց մեծությունը 26 սմ. է: Բնիկները ուտում են նրանց միսը: Այդ թիթեռներին որսում են նետաղեղով:*

Նկ. ԱՆԱՏՈԼԻ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

## ՄԵՌԱԾ ՋՈՒՐ

*Բևեռագնացները երբեմն զարմանալի ջրի են հանդիպում: Նավը դադարում է ղեկավարման ենթարկվել և համարյա չի շարժվում: Դրա համար այդպիսի ջրերը մեռած ջուր են անվանել:*

*Իրականում, այն պարզապես քաղցրահամ, համարյա թե թորած ջուր է, որ կարծես առանձին շերտով լցրել են աղի և խիտ ծովաջրի երեսին:*

*Մեռած ջուրն առաջանում է, երբ շատ խաղաղ եղանակներին արագորեն հալչում է շրջապատի սառույցը, և ջրի երկու շերտերը իրար չեն խառնվում:*



## ՄՈՒՄԻԱՆ

կաններին այդ էլ հաջողվեց և, վերջապես, երևաց մերկ մումիան:

Մարմինը մուգ-շագանակագույն էր, մկանները լրիվ չորացած էին, բայց պարզ երևում էր, թե ինչպես էին պրկաձգել կմախքը: Շատ լավ պահպանվել էր դեմքը՝ երկար, բարակ քիթ, սեղմված շրթունքներ: Աչքերը փակ էին: Ոտքերի և ձեռքերի եղունգները փայլուն էին, գլխին մազեր կային: Նույնիսկ կարելի էր պատկերացնել, թե ինչպիսին էր եղել քուրմ Պեդեխիսը կենդանության ժամանակ:

Բայց ինչպե՞ս են մումիաները այդպես պահպանվել, ինչպես էին կմռսում դիակները, ի՞նչ միջոցներով:

Հին եգիպտացիները մումիաները ոչ թե թաղում էին գետնի տակ, այլ պահում էին դամբարաններում:

Հին եգիպտական ձեռագրերում գրված չէ, թե ինչպես են կմռսել մումիաները: Այդ մասին պատմում է հույն պատմաբան Հերոդոտը, որը ճանապարհորդել է Եգիպտոսում V դարում մ. թ. ա.:

Երբ մարդը մահանում էր, նրա մարմինը տալիս էին հատուկ մասնագետ-կմռսողներին: Երկար ժամանակ դիակը պահում էին աղի լուծույթի մեջ: Հետո չորացնում էին, մեջը լցնում հատուկ լուծույթներ և ողողում հոտավետ յուղերով: Այդ բոլորից հետո դիակը փաթաթում էին մեծ ծածկոցով և բարուրում բազմաթիվ ժապավեններով:

Բարուրած մումիան տեղավորում էին սարկոֆագի՝ դագաղի մեջ և պահում դամբարանում, որտեղ քուրմերը գալիս էին աղերսելու և աղոթելու:

Եգիպտացիները հավատում էին, որ մահանալուց հետո հոգին վերադառնում է մարմնին և մահացածը անդրշիրիմյան աշխարհում հարություն է առնում: Դրա համար էլ նրանք կմռսում էին իրենց հարազատներին, ընկերներին, աշխատում էին պահպանել նրանց մարմինը՝ «հոգու շտեմարանը»:

Եգիպտացիները կմռսում էին նաև անասուններին: Գիտնականները գտել են կատուների, բազեների, կոկորդիլոսների և այլ կենդանիների մումիաներ: Օրինակ, Հին Եգիպտոսի մայրաքաղաք Մեմֆիսի մոտ մի մեծ դամբարանում հայտնաբերել են Սուրբ Աֆիս ցուլի հարյուրավոր մումիաներ:

## ԱՅՐՎՈՂ ՋՈՒՐ

Հնագույն քաղաք Նովգորոդի մոտակայքում հոսում է Իլմեն գետը: Ձկնորսները նկատել են, որ գետի ջուրը որոշ տեղերում հանկարծակի սկսում է ըլթըլթալ, և ջրի մակերեսի վրա առաջանում են մանրիկ շատրվաններ: Եթե այդ շատրվանների մեջ այրվող լուցկի գցես, այն կբոցավառվի անմուխ, կապույտ բոցով:

Ձմռանը ձկնորսները սառույցի վրա մի փոքրիկ անցք են բաց անում, ջուրը վառում և տաքանում են: Եթե վառվող ջրի հատակը փայտով խառնես, բոցն ավելի կմեծանա:

Ինչո՞վ բացատրել այդ երևույթը: Ջրում ապրող մանրէները նպաստում են ջրիմուռների, ջրաբույսերի, տորֆի փտմանը, որի հետևանքով և ջրի մեջ առաջանում են այրվող գազեր:

Հենց այդ գազերն են, որ որպես «վառելիք» օգտագործվում են ձկնորսների խարույկների համար:



## ՀՅՈՒՍԻՍԻ ՇՆԵՐԸ

Երևի բոլորդ էլ էկրաններն վրա տեսել եք անծայրածիր սպիտակ ամայի տարածություններ. չի երևում ո՛չ ծառ, ո՛չ թռչուն: Բայց ահա հորիզոնի վրա շարժվող մի սև կետ երևաց, մոտեցավ, մոտեցավ... Շնասահնակ է. սրընթաց առաջ է սլանում: Չկարծեք, թե դա այն ժամանակ էր, երբ մարդկությանը հայտնի չէր ոչ ավտոմեքենան և ոչ օդանավը: Ո՛չ, ծայր հյուսիսում, բևեռային շրջաններում այժմ էլ փոխադրության հիմնական միջոցը շներն են:

Փոստը, սննդամթերքը և արդյունաբերական ապրանքները շըներն են տեղափոխում: Բժի՛շկ է հարկավոր, նրան նույնպես շները կբերեն:

Մի ընկեր, որը երկար ժամանակ աշխատել էր հյուսիսում, պատմում է.

«Մի անգամ, շնասահնակը գիշերով սլանում էր սառած գետի վրայով: Հանկարծ սառույցը կոտրվեց, շները, մարդիկ և սահնակը իջան ջրի մեջ: Օգնություն կանչելն անօգուտ էր, ո՛վ պիտի լսեր: Լավ է, որ շները չշփոթվեցին: Նրանք դուրս քաշեցին և՛ մարդկանց, և՛ սահնակը»:

Բևեռային երկար գիշերներին շունը հրաշալի ընկեր է: Ընտանի բոլոր կենդանիներից միայն շունն է, որ կարող է ապրել և աշխատել բևեռում:

Նյու-Յորքի զբոսայգիներից մեկում կանգնեցված է շան արձան: Դա լծկան շների առաջնորդ Բալտոյի հուշարձանն է: Բալտոյի երկրորդ հուշարձանը գտնվում է Ալյասկայի Նոմե քաղաքում: Ի՞նչ է արել Բալտոն:

Մի անգամ Նոմե քաղաքում, տարածվում է տիֆ հիվանդության համաճարակ: Քաղաքը վըտանգի տակ էր, մահը սպառնում էր բոլորին: Անհրաժեշտ էր անհապաղ դեղորայք հասցնել: Այդ գործը հանձնարարեցին մի ուժեղ մարդու, որը պետք է գնար շնասահնակով. այդ սահնակին լծված էր Բալտոն:

Բուք էր, հիսուն աստիճան սառնամանիք: Կարծր, ասեղի նման սուր-սուր սառցաձյունը վիրավորել էր շան թաթերը: Սակայն լծկանը ենթարկվելով «կարապանին», անընդհատ գնում էր: Հինգ օր ու գիշեր նրանք մաքառեցին բնության արհավիրքի դեմ: Եվ երբ հասան Նոմեի փողոցներին, Բալտոյի ծվատված թաթերը ձյան վրա արյան խոշոր հետքեր էին

Սիրելի երեխաներ։ Սկսված է

**ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆԻ**

երկերի վեցհատորյակի բաժանորդագրությունը։

***Առաջին չորս հատորում զետեղված են ձեր սիրելի գրողի որսորդական շուրջ 500 պատմվածքները։***

***V և VI հատորներում կտպագրվեն «Սևանի ափին» և «Հովազաձորի գերիները» արկածային վեպերը։***

**ՎԵՑՀԱՏՈՐՅԱԿԻ ՀԱՏՈՐԻ ԳԻՆԸ Է 80 ԿՈՊԵԿ։**

Բաժանորդագրվելիս բաժանորդից գանձվում է կանխավճար՝ մեկ հատորի արժեքի չափով։ Վերջին հատորը տրվելու է բաժանորդին կանխավճարի հաշվին։

**Բաժանորդագրությունը կատարվում է Հայգրքի և Հայկոոպի գրախանութներում։**

*թողնում, սակայն Նոմեի բնակիչները փրկված էին։*

*Լծկան շները եղել են հյուսիսի անխոնջ ու անվեհեր նվաճողների ուղեկիցներն ու սխրակիցները։*

*Գրենլանդիայի դպրոցներում աշակերտներին սովորեցնում են շնասահնակ վարել։ Այնտեղ դա նույնքան պարտադիր առարկա է, ինչպես, ասենք թվաբանությունը։*

*Հյուսիսի լծկան շները խոշոր են, ուժեղ և բրդոտ։ Նրանք քնում են ձյան մեջ։ Փոս են փորում ու նծկվում մեջը, իսկ քամին ձյան վերմակ է փռում նրանց վրա, որի տակ սեփական շնչառությամբ ջերմանում են։*

*Հյուսիսի մարդու համար շատ դժվար կլիներ, առանց անեզրը, համբերատար, աշխատավոր շների։*



Լույս է տեսնում 1925 թվականից



# ՊԻՈՆԵՐ

№ 4 ապրիլ 1968 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝ նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆ

Գլխավոր խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԱՐՋՈՒՄԱՆՅԱՆ Ռ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղարվեստական խմբագիր)

**„Пионер“** на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.

*Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—68—16, 2—59—06։*

ՎՖ 06490։ Պատվեր՝ 514։ Տպաքանակ՝ 55000։ Տպագրական 3 մամուլ։ Ստորագրված է տպագրության 24.IV.1968 թ.։ ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության Ն. Մելքոնյանի անվան պոլիգրաֆկոմբինատ։ Երևան, Տերյան փ. № 91։ Գինը՝ 10 կ.



## Ճանաչիր այս նկարը

Ֆրանսիացի նշանավոր նկարիչ Էժեն Դելակրուայի այս աշխատանքը կոչվում է «Ազատություն բարիկադների վրա»: Այն համարվում է Եվրոպայի 19-րդ դարի լավագույն նկարներից մեկը:

Առաջին անգամն էր, որ մեծածավալ կտավի վրա այդքան կենդանի ու վարակիչ կերպով փառաբանվում և ցույց էր տրվում հեղափոխական ժողովրդի միաձույլ ուժը:

Թեև առաջին պլանի վրա նկարված են անկանոն բարիկադներ, սպանված և վիրավոր մարդիկ, սակայն նայողի ուշադրությունը առաջին հերթին գրավում է դրոշակը ձեռքին, հաղթականորեն առաջ մղված երիտասարդ աղջկա գեղեցիկ կերպարը, որն ազատության մարմնացումն է:

Վեհ ու խրոխտ կեցվածքով ազատատենչ աղջիկը կոչ է անում բոլորին հետևել իրեն: Եվ, նրա օրինակով ներշնչված, ձախ կողմից շատերն են ելնում մարտնչելու: Կրակոտ խանդավառությամբ է ներշնչված, երկու ձեռքում էլ ատրճանակ բռնած, առաջ նետվող ամենափոքր մարտիկի կերպարը:

Գույների, լույս ու ստվերի գեղեցիկ հակադրությունները ամբողջ կոմպոզիցիային տալիս են հզոր ալիքի տեսք, որի բարձրագույն կետը հանդիսանում է ծփացող դրոշակը:

Նկարը պահվում է Փարիզի Լուվր թանգարանում: